Le Gérant: H. STÉPHAN

IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant: H. STÉPHAN

IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS

208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant: H. STÉPHAN

## ՀԱՆԴԷՍ ԼԱ ՍԻՈԹԱՅԻ ՄԷՋ

Տեղւոյն Մանկապարտէզի հանդէսը տեղի կ'ունենայ վաղը առաւօտ ժամը 9ին քաղաքապետարանի Թատրոնը:

*Կը նախագահէ՝ Պ. Ա. ԱԲՈՅԵԱՆ*



*ՆՈՐ ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹԻՒՆՆԵՐ*

**L'ANNEAU D'ANAHIT**

**R. DASTARAC**

Chochanik 1 Jeune Arméniene

J. de Rohé

*Իւրաքանչիւրը կ'արժէ 14 ֆր.,* փոստի ծախք չկայ

*Ամերիկեան փլաքներ, հայերէն, թուրքերէն, եւ յունարէն Հատը 18 ֆր.*

Դիմել' պալենց, 233 Fbg. St. Martin, Paris (10e):

Ծանօթ: Գրատանս նոր գրացանկը մամլոյ տակ է:

## ՄԱՍՆԱԳԷՏ ԲԺԻՇԿՆԵՐ

96 r. Rivoli, *մէթ. Շաթլէ: Արմատ. եւ նոր մեթոտով դարմանում արանց եւ կանանց մորթի, արիւնի եւ վեներ. հիւանդութեանց (ֆրանկախտ, ջերմամիզ.) եւ վարխի: Մասն. լապօռաթուար: Խղճամիտ եւ արագ խորհրդակցութ. ամէն օր 9—12, 2—8 Կիրակի 9—12,*

EMPIRE Միւզիք-Հօլ՝ 37 Av. Wagram

ԲԺՇԿ. ԵՒ ՎԻՐԱԲՈՒԺԱԿԱՆ ԴԱՐՄԱՆԱՏՈՒՆ

10 Rue Beaugrenelle, Paris (15)

Մէթրօ՝ Beaugrenelle

Միզանցքի, փրոսթաթի, մորթի, արիւնի, կանանց հիւանդութիւններ եւ ֆրանկախտ: Ամէն օր ժ. 10—12 եւ 3 9: կիր. եւ տօն օրեր 10 12:

## Վարձու սենեակներ

*Պարտէզով գեղեցիկ վիլլայի մը մէջ 3.4 սենեակ վարձու են: Gare St. Lazareէն 25 վայրկեան: Դիմել տեղւոյն վրայ՝* 25 Rue de Paris, Cormeille-en-Parisis.



## Հ. Յ. Դ. ՓԱՐԻԶԻ ԿՈՄԻՏԷՆ ԺՈՂՈՎԻ

*կը հրաւիրէ Փարիզի բոլոր խումբերու ընկերները ստորեւ նշանակուած թուականներուն: Ներկայ կ'ըլլան կ. կ.ի եւ փարիզի կոմիտէի ներկայացուցիչները: Բոլոր ընկերներու ներկայութիւնը անհրաժեշտ է.*

*ԵՌԱԳՈՅՆ ԵՒ ՎԻՇԱՊԵԱՆ (Անիէռ-Պուա-Քոլոմպ) այսօր Շաբաթ իրիկուն ժամը 9ին ծանօթ հաւաքատեղին:*

*ԱՐԾԻՒ (Քաշան) վաղը առաւօտ ժ. 9.30ին ծանօթ հաւաքատեղին:*

*ԶԱՒԱՐԵԱՆ, ՎՌԱՄԵԱՆ, ՄՋՈՅ եւ ՄՈՒՐԱՏ (Պիյանքուռ-Իսի-Լէ Մուլինօ) վաղը առաւօտ ժամը 9.30ին, 164* Ave. Verdun.

*ԱՂԲԻՒՐ ՍԵՐՈԲ (Իթալի) այս Կիրակի կէս օրէ վերջ ժամը 3ին.* 184 Ave. d'Italie.

*ՀՐԱՅՐ (Սարսէլ) վաղը ժամը 2ին ծանօթ հաւաքատեղին:*

*ԱՐՂՈՒԹԵԱՆ (Շավիլ) 30 Դեկտ. Երկուշաբթի իրիկուն,* 26 Rue Carnot. *Փարիզ Սէն Լազար կայարանին քովի սրճարանը:*

## ՑԵՐԵԿՈՅԹ - ՏՕՆԱԾԱՌ

Ա. Ե. Հ. Կ. խաչի «փարիզի Մանուկներու Պաշտպանութիւն» մասնաճիւղին կողմէ: վաղը կիրակի ժամը 3 — 8՝ Salle-Jean Goujonի (8 Rue Jean Goujon) վերի սրահներուն մէջ:

*Շքեղ տօնածառ, գեղարուեստական բաժին, երգ, նուագ*

*Կաղանդ պապան նուէրներ կը բաժնէ փոքրիկներուն*

Մուտք մեծերու համար 10 ֆրանք, փոքրերու համար 5 ֆրանք որ իրաւունք կուտայ մէկ նուէրի

## ԹԷՅԱՍԵՂԱՆ - ԵՐԵԿՈՅԹ

*Զ. Ե. Ո. ՄԻՈՒԹԵԱՆ ՓԱՐԻԶԻ ՄԱՍՆԱՃԻՒՂԻՆ ԿՈՂՄԷ ՄԻՈՒԹԵԱՆ Բ. ՊԱՏԳԱՄ. ԺՈՂՈՎԻՆ ԱՌԹԻՒ*

*Այսօր Շաբաթ իրիկուն ժամը 9ին Ֆլորիայի մէջ կը ներկայացուի՝ «ՆԱԲՈԼԷՈՆ» շարժանկարը*

*Կը հրաւիրուին բոլոր անդամներն ու համակիրները*

## ԵՐԵԿՈՅԹ - ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

*Կազմակերպուած Փարիզի Եօզղատի եւ շրջականերու Հայր. Միութեան կողմէ, ի նպաստ* Թոքախտաւոր *հայրենակիցներու:*

*Այսօր Շաբաթ իրիկուն ժամը 8.30ին մինչեւ առաւօտ* Salle du Peuple, 42 Rue Hermel (18e), N.S. J. Joffrin *կամ մէթրօ* Simplon).

*կը ներկայացուի՝* «ՁԱՐՇԸԼԸ ԱՐԹԻՆ ԱՂԱ» *(զաւեշտ)*

*Երգ, նուագ, պարի մրցում, անակնկալներ, ճագ պանտ, պիւֆէ ժողովրդական գիներով:*

Մուտք՝ 10 ֆրանք արանց եւ 7.50 կանանց համար

## ԵՐԵԿՈՅԹ - ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

*ԱՏԱԲԱԶԱՐԻ ՀԱՅՐԵՆԱԿՑԱԿԱՆ ՄԻՈՒԹԵԱՆ ԿՈՂՄԷ*

*Այսօր Շաբաթ իրիկուն ժամը 9էն մինչեւ առաւօտ* Salle «Harola»*ի շքեղ սրահներուն մէջ* 3 Rue La.Vieuville (Nord-Sud: Abbesses)

*Կը Նախագահէ՝ ՏՔԹ. ԱՐԹԻՆԵԱՆ*

*Գեղարուեստական ճոխ բաժին, երգ, նուագ, արտասանութիւն, զաւեշտ, անակնկալներ:*

*Կը նուագէ* LUNA - PARK*ի օրքէսթրը:*

*Պիւֆէ ժողովրդական գիներով:*

*ՄՈՒՏՔ 7.50 ՖՐԱՆՔ*

Հաղորդակց. միջոցներ.— Nord-Sud: Abesses. Autobus AR Tram. 5 *եւ* 20, Métro: Pigalle

## ԵՐԵԿՈՅԹ — ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

*Կազմակերպուած Հ. Մ. Ը. Մ.ի Ալֆորվիլի մասնաճիւղի կողմէ*

*Այսօր Շաբաթ իրիկուն ժամը 8.30էն մինչեւ առաւօտ:* 148 Rue Villeneuve, Alfortville: *Կը նախագահէ՝ Պ. Գ. ՊԵՏՐՈՍԵԱՆ*

*Երգ, մեներգ, նուագ, արտասանութիւն, բանախօսութիւն, սկաուտական անակնկալներ եւ ֆանթէզիներ,*

*Կը մասնակցին՝ Օր. Մինթանճեան եւ դերասաններ Պ. Պ. Մաքսուտեան, Գրիգորեան, եւայլն:*

*ՄՈՒՏՔ' 10 եւ 5 ՖՐ. ՆՔ*

### ԹԱՏԵՐԱԿԱՆ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ

*Նախաձեռնութեամբ Եօզղատի Հայր. Միութեան*

*ՄԱՐՍԻԼԱՀԱՅ ԴՐԱՄԱՏԻԿ ՍՏՈՒԴԻԱՆ*

*Ղեկավարութեամբ դերասան Մ. ՄԱՐՈՒԹԵԱՆԻ*

*Վաղը Կիր. իրիկուն ժ.ը 8.30ին* Salon Chape*ի մէջ,* (84 Rue Chape)

*կը ներկայացնէ՝ Մ. Մարութեանի* «ԽԱՒԱՐԻ ՄԷՋԷՆ»

*ԳԻՆԵՐԸ ՍՈՎՈՐԱԿԱՆ*

## Հ. Յ. Դ.

*ԳԱՒԱՌ*

Մարսէյլի *Պատանեկան միութեան ընդհ. ժողովը՝ վաղը Կիրակի ժամը 2ին 63 Րիւ տը լա Րէփիւպլիք, ընթերցասրահին մէջ:*

Սէն Լուի *(Մարսէյլ) Ակնունի ենթակոմիտէի դասախօսական ժողովը վաղը կիրակի երեկոյ ժամը 4ին:*

*Կը հրաւիրուին ընկերներն ու համակիրներ:*

*ՓԱՐԻԶԻ Տարօն-Տարուբերանի Հայր. Միութեան վարչութենէն կը խնդրուի իր ներկայացուցիչը ղրկել խմբագրատուն:*

## ՆԱՄԱԿԱՏՈՒՓ

ՍՏԱՑԱՆՔ

Լիոն, Զէյ.— 35 ֆրանք:
Մեց, Ս. Պ.— 70:
Վիվիէ, Ա. Ա.— 35:
Ռիորժ, Մ. Թ.— 35:
Ժիւան լէ փէն, Ս. Կ.— 70:
Պրոն, Կ. Մ.— 42:
Լիոն, Ս. Գ.— 30:
Մարսէյլ, Ա. Ս.— 70:
Մարսէյլ, Յ. Է.— 140:
Ոնթմէ Քառլօ, Ե. Փ.— 35:
Տրակինիան, Սան.— 35:
Անվէրս, Իփէք.— 300:
Լիոն, Ամեր.— 96:
Տէսին, Յ. Շ.— 50:
Կրընոպլը, Գ. Տ. Ղ.,— 65:
Լիոն, Գործ.— 692:
Տրանսի, Գ. Մ.— 70:
Տէսին, Պօտ.— 200:




IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant: H. ST. PHAN

